Համայնավարները ուզեցին հակացոյց մը կատարել եւ կարգ մը միջադէպեր պատահեցան։ Բազմաթիւ կառքեր վնասուեցան եւ երեք հոգի ծանրապէս վիրաւորուեցան։ Կարգ մը ձերբակալութիւններ տեղի ունեցան ։

Միւս կողմէ Ուրբաթ օր գործադուլ հռչակեցին դպրոցական եւ համալսարանական շրջանակները։ Ընդհանուր ձեւով կրթական պաշտօնէութեան 70 առ հարիւրը մասնակցեցաւ գործադուլին։ Հազարաւոր աշակերտներ դպրոց չգացին։ 1500 ուսանողներ ալ ցոյց ըրին Սորպոնի բակը, բողոքելու համար Տը Կոլի թեկնածութեան դէմ։ Իսկ ուրիշներ (աշակերտ) կը բողոքէին դպրոցներու փակման, եւ ուսուցիչներու բացակայութեան դէմ ։

Տեղական մամուլը (ոչ - համայնավար) կը բողոքէ նախարար Կայլէի դէմ որ թոյլ տուած է որ հինգշաբթի եւ ուրբաթ ամբողջ օրը ձայնասփիւռով կոչ ըլլայ ծնողքներուն որ իրենց տղաքը դպրոց չղրկեն։ Այս ձեւով իր մասնակցութիւնը բերաւ Ազգ. Կրթութեան Դաշնակցութեան ցոյցին, կը գրէ Ֆիկարօ։

× Հինգշաբթի չաբաթաթերթ՝ «Քարըֆուր», եւ ուրբաթ օր՝ «Իւմանիթէ» գրաւուեցան ներքին նախարարութեան որոշումով ։

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՄԱՐՍԷՅԼ.— Մարսէյլի Ազգ. Որբ. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է ի նպաստ աղքատներու, փոխան ծաղկեպսակի ողբ. Տիկին Մըրի Թէքէեանի (ծնեալ Սարգիսի) դառնաղէտ մահուան առթիւ հետեւեալ նուէրները։ Պ. Սարգիս Ալթունեանէ հազար ֆր., Պ. Յակոբ Փափազեանէ, Պ. Զ. Վահագն Սաաթճեանէ, Պ. Սարգիս Թէքէեանէ հազարական ֆրանք, Պ. Զ. Ալիքսանեանէ, Պ. Տէր Խաչատուրեան Ռուբէնէ, Պ. Ենովք Արմէնէ, Պ. Մկրտիչ Շեխիկեանէ, Պ. Զարեհ Քէօթահեալեանէ, Պ. Միքայէլ Խաչիկեանէ 500ական ֆր., գումար 7000 ֆրանք ։

×

ՄԱՐՍԷՅԼ.— Պուլվար Օտտոյի Ս.Յակոբ եկեղեցւոյ Կրօն. Ընկերութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները փոխան ծաղկեպսակի հանգուցեալ Պօղոս Պալեանի մահուան առթիւ.— Պ. Գ. Փունարճեան 2000 ֆր., եկեղեցւոյ պայծառութեան համար, Պ. Շահպալեան հազար ֆր., տեղւոյս Ազգ. դպրոցին եւ հազար ֆր. Աղքատախնամին, (Աղքատախնամինը ստանալ Տէր Պսակ հօրմէ)։ Հանգուցեալ Տիկին Ռեբեկա Վարդանեանի տխուր մահուան առթիւ Պ. Աւետիս Մելքոնեան երեք հազար ֆր. եկեղեցւոյ ։ Նոյն առթիւ Կրօն. Ընկերութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Պալեան եւ Վարդանեան ընտանիքներուն եւ իրենց բոլոր պարագաներուն ։

×

Էքպէրեան եւ Մաքսաեան ընտանիքները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբացեալ Օննիկ Էքպէրեանի մահուան առթիւ։

×

Այրի Տիկին Եղսաբէթ Տօլպաշեան, Տէր եւ Տիկին Էքինճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յակոբ Տօլպաշեան եւ զաւակները, Պ. Վարդան Կատարեան, ինչպէս նաեւ Տօլպաշեան եւ Կատարեան ընտանիքները (Ամերիկա), Տէր եւ Տիկին Յովակիմ Կարապետեան եւ զաւակները (Հալէպ), Տէր եւ Տիկին Կիրակոս Մինասեան եւ զաւակները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, հեռագրով, նամակով, բարենպատակ հաստատութեանց նուիրատուութեամբ ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, աներհօր, հօրեղբօր, մեծ հօր եւ ազգականին Մկրտիչ Տօլպաշեանի մահուան առթիւ։

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՍԱՄՈՒԷԼ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Վարժարանին 1958 – 1959 ուսումնական տարեշրջանի արձանագրութիւնները կը բացուին ապրիլ 15ին եւ կը փակուին Յուն. 15ին։ Տեսչութիւնը ջերմօրէն կը խնդրէ որ դիմողները անպայման միասին բերեն իրենց զաւակներուն դպրոցական ՎԻՃԱԿԱՑՈՅՑԸ ։

COLLÈGE S. MOORAT

26, Rue Troyon, Sèvres Tel. OBS. 18-28

### ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի բոլոր ներկայացուցիչները Շաբաթ (Յունիս 7) ժամը 20.30ին Սոսիէթէ Սավանթի Սէ սրահը ։

Ֆ. ԿԱՊ. Խաչի Տէսինի մասնաճիւղի ընդհ. ժողովը (8 Յունիս) Կիրակի կէսօրէ ետք ժամը 2.30ին, Հ. Յ. Դ. Տան ներքնայարկը։ Ներկայ կ'ըլլայ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը։ Կը հրաւիրուին բոլոր ընկերուհիները։ Կարեւոր օրակարգ։ Ներկաներուն թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի ։

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՆՈՒԷՐ

Իսիլիրցի Այրի Տիկին Ռոզա Պարոնեանի (ծնեալ Գալէմդարեան) մահուան առթիւ Սիսթերոնի մէջ, Պ. Ե. Ազատեան հազար ֆր. կը նուիրէ Ֆ. Կապ. Խաչի օգափոխութեան կայանին։(Ստանալ Յառաջէն)։

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Այս տարի Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլէի օդափոխութեան կայանի բացումը տեղի պիտի ունենայ Յուլիս 7ին, եւ ոչ թէ չորսին, ինչպէս նախապէս յայտարարուած էր ։

Արձանագրուողներէն անոնք որոնք տակաւին չեն ստացած առողջապահական թերթերը կը խնդրուի ներկայանալ Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին, 15 բիւ ժան Կուժօն, Փարիզ, երկուշաբթի եւ Ուրբաթ առաւօտները, ժամը 10–12։

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Ողբացեալ Տիկին Մէյրի Թէքէեանի մահուան առիթով փոխան ծաղկեպսակի Մարսէյլի Ազքատախնամ ինտրուած նուէրներու ցանկին մէջ (հրատարակուած Յառաջի 27 Մայիսի թիւով), Թէքէեան Ս. անունը պէտք է ըլլայ Թէքեան Ս.։

× Հայաստանէն նամակ ունի Ամիրբեկ Սերգօ Մելքոնեան։ Դիմել եկեղեցի ։








Imprimé sur les presses du journal HARATCH

— 17. Rue Bleue, 17 — PARIS (9e) —

## ՆՈՒԷՐՆԵՐ

Արպոյեան եղբայրներ (Մարսէյլ) Բժ. Յ. Սիվրիհիսարլեանի մահուան քառասունքին առթիւ հազար ֆրանք կը նուիրեն Մշակոյթի տան եւ հազար ֆրանք « Հայ – Բոյժ»ի: Ստանալ Յառաջէն:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ.— Եկեղեց. Տիկնանց յանձնախումբը, շնորհակալութեամբ ստացած հետեւեալ գումարները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան Պ. Քաջազն Յով– հաննէսեանի նշանախօսութեան առթիւ փոխան ծաղկեփունջի, Օր Տիրուհի Անդրանիկեանէ հինգ հազար ֆրանք, Պ. Հանրի Պետրոսեանէ տասը հազար ֆրանք:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տիկին Մ. Ուզունեան կը նուիրէ հազար ֆրանք Հայ Կարմիր Խաչի Ֆէսան–վիլիէի օգափոխութեան կայանին, փոխան ծաղկեպսակի, Տիկին Զ. Պահրիի մահուան առիթով:

Տէր եւ Տիկին Վահրամ Մոսթիչեան կը նուիրեն հազար ֆրանք Հայ Կարմիր Խաչի Անտէր հիւանդներու ֆոնտին, փոխան ծաղկեպսակի, Պ. Օննիկ Կարապետեանի մահուան առիթով:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Խանասորի հերոսամարտի տարեդարձը, Շաւիլի մէջ Յուլիս 27ին:

## ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԻՈՒԹԻՒՆ

Այն ծնողքները որ կը փափաքին իրենց զաւակները օգափոխութեան կայան ղրկել, կրնան դիմել.— Եկեղեցւոյ դիւանատունը ամէն երեքշաբթի ժամը 15էն17:

## ՍԱՄՈՒԷԼ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Վարժարանին 1958 – 1959 ուսումնական տարեշրջանի արձանագրութիւնները կը բացուին ապրիլ15ին եւ կը փակուին Յուն. 15ին: Տեսչութիւնը ջերմօրէն կը խնդրէ որ դիմողները անպայման միասին բերեն իրենց զաւակներուն դպրոցական ՎԻՃԱԿԱՑՈՅՑԸ:

COLLÈGE S. MOORAT
26, Rue Troyon, Sèvres — Tel. OBS. 18-28

## ՀԱՅ – ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի ժամը 10.30ին Ս. Խաչ եկեղեցիին մէջ (10պիս, Րիւ Թուէն), պիտի պատարագէ եւ քարոզէ Գեր. ՊԵՏՐՈՍ Վ. ԱԴԱՄԵԱՆ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

× Կիւրալականէն Մուշեղ Խաչատուրի Փանըրվանեան կը փնտռէ իր որդին Հրաչիկ Մուշեղի Փանըրվանեանը, 1941էն ի վեր ոչ մէկ լուր ունին:

× Պաթումէն Աշխէն Մատէոսեան կը փնտռէ իր եղբայրը Խաչիկ Խաչատուրեանը:

× Կիրովականէն Երանուհի Ալեքեան կը փնտռէ իր զաւակը Արամայիս Եղիային Ալեքեանը, ծնած 1918ին: Երկար տարիներէ ի վեր լուր չունի:

Կը խնդրուի արտասահմանի բոլոր հայ թերթերէն որ արտատպեն այս փնտռտուքներու ցանկերը, որոնք հետզհետէ պիտի հրատարակուին:

Տեղեկացնել 15 Րիւ Ժան Կուժօն:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի բոլոր ներկայացուցիչները Շաբաթ (Յունիս 7) ժամը 20.30ին Սոսիէթէ Սավանթի Սէ սրահը:

Ֆ. ԿԱՊ. Խաչի Տէսինի մասնաճիւղի ընդհ. ժողովը (8 Յունիս) Կիրակի կէսօրէ ետք ժամը 2.30ին, Հ. Յ. Դ. Տան ներքնայարկը: Ներկայ կ'ըլլայ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը: Կը հրաւիրուին բոլոր ընկերուհիները: Կարեւոր օրակարգ: Ներկաներուն թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի.

ՎԻԷՆ.— Հ. Մ. Ը. Մ.ի ընդհ. ժողովը այս Երկուշաբթի, ժամը 20.30ին, Համօ Օհանջանեան ակումբը: Կը խնդրուի բոլոր անդամներէն ներկայ գտնուիլ, ինչպէս նաեւ մարզիկ եղբայրներէն:

ՇԱՒԻԼԻ Կրօն. Ընկերակցութեան ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը ճիշդ 21ին: Օրակարգ.— Հրաժարում վարչութեան, հրաժարում երիտ. յանձնախումբին: Ընտրութիւն նոր վարչութեան: Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի:

Ծանօթ Աւետարանիչ Վեր. Ս. ՏՈԳ–ԹՈՐԵԱՆ պիտի խօսի Յունիս 8էն սկսեալ ամէն իրիկուն ժամը 8.30ին, 28 Ավընիւ Պուրկէն, Իսի լէ Մուլինօ, մեթրօ Մէրի տ'Իսի: Մուտքը ազատ է:

ՄՈՒՐԱՏ-ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

# ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՊԱՐՏԷԶՆԵՐՈՒՆ ՄԷՋ

Այս Կիրակի ժամը 16էն 23 — 26, RUE TROYON - PONT DE SEVRES

Կը մասնակցին՝ ԱՅՏԱ ԱԶՆԱՒՈՒՐ, ՆԻՆՕ ՏԸ ՄԻՒՐՍԻԱ, ժողովրդական պարեր եւ երգեր, պալէ, Լէ Սօֆէն տը լ'արմոնիքա, Պերնար Տէտէճեան եւ իր ֆոլքլորիք խումբը:

**ATTRACTIONS**

Ներկայացնողներ.— ԱԼԻՍ ՓԱՓԱԶԵԱՆ եւ ՍԵՐԺ ՔԻԶԻՐԵԱՆ

**Feu d'artifice** Անակնկալներ
Պիւֆէ

Ֆ. Կ.ԽԱԶԻ Փարիզի մասնաճիւղին վիճակահանութեան շահող թիւերը ստանալու համար դիմել Տիկին Ա. Գազազեանի, տասուօտները, 6 Րիւ Սէն Սիւլփիս, Փարիզ (6), մէթրօ Օտէօն:

Եւ կամ հեռախօսել՝ ՏԱՆ. 67–36: Կը խնդրուի մինչեւ Յունիսի 15 իրենը վերցնել:

ՇԱԲԱԹ (ՅՈՒՆԻՍ 7)
ժամը 15.30ին, Էնսթիթիւ Օնկրուա
18 Րիւ Փիէռ Քիւրի
ՄԱՐԳԱՐԻՏ ԲԱԲԱՅԵԱՆԻ
ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ
Կը մասնակցին՝ Իրիս Պիւլպիւլեան, Մարիէլ Նորտման, Ժ. Ժ. Փենշօ:

## ԱՄԱՎԵՐՋԻ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Անիէռ – Պուա Քոլոմպի շրջանի Փարիզի Հայոց եկեղեցւոյ հովանաւորութեան տակ բացուած դպրոցին ամավերջի հանդէսը տեղի պիտի ունենայ այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30ին, Պուա – Քոլոմպի եկեղեցիին ետեւը, 32 րիւ Փօլ-Տէրուլէտ, Միւնիսիփալի Թէաթրը սրահին մէջ:

Նախագահութեամբ՝ Գերշ. Տ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ:
(Հայր. պատուիրակ Եւրոպայի Հայոց):

Բոլոր ծնողքները եւ հայ հասարակութիւնը կը հրաւիրուին ներկայ ըլլալ այս հանդէսին եւ քաջալերել աշակերտութիւնը եւ կրթական մարմինը:



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

ՄԱՔՄԻԼԸՆ – ՏԸԼԸՍ խօսակցութիւնները կը սկսին Ուաշինկթընի մէջ. Անգլիոյ Վարչապետը մինչեւ Յունիս 14 պիտի մնայ Ամերիկա, իր պաշտօնակիցներուն հետ միջազգային հրատապ հարցերուն շուրջ խորհրդակցելու համար :

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ Արտաքին նախարար Տըլըս Խ. Միութեան հետ տնտեսական գործակցութեան մասին խօսելով յայտարարեց թէ հաւանական է որ այդ գործակցութիւնը սկսի «կարգ մը մարզերու մէջ» :

ԼՈՆՏՈՆԻ հանրակառքերու գործադուլը կը շարունակուի :

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ մէջ գործազուրկներու թիւը պակսած է Ապրիլ ընթացքին :

ՓՈՐԹՈՒԿԱԼԻ մէջ ընտրապայքարը կը շարունակուի. զօր. Տելկարօ նախագահ Սալազարի միակ հակառակորդն ու ընդդիմադիրներու թեկնածուն է :

ԼԵՀԱՍՏԱՆԻ համալսարանի ուսանողներու պաշտօնաթերթին խմբագրապետը ապաստանեցաւ Արեւմտ. Գերմանիա :

ԼԷՈՒԻՍ ՇԹՐԱՈՒՍ, հիւլէական ուժի յանձնախումբի նախագահը ստիպուեցաւ հրաժարիլ, համաձայն չըլլալով Այզըն–հաուըրին հետ, ապազինման հարցին շուրջ եւ այս մարզին մէջ Խ. Միութիւն–Ամերիկա յարաբերութեանց :

ԻՆՏՈՆԵԶԻՈՅ կառավարութեան խնդրանքին վրայ Ատլանտեան Ուխտի երկիրները պիտի օգնեն Ճաքարթայի կառավարութեան՝ որ զսպէ ըմբոստները :

---

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Պ. Տիգրան Վըրոյր (Անվէրս) 25.000 ֆրանք, Տիկին Նուարդ Բագրատունի (Ֆիլատէլֆիա) 25 տոլար, Տիկին Աստղիկ Աչըքկէօզեան իր ամուսնոյն մահուան տարելիցին առթիւ հինգ հազար ֆրանք, Պ. Տիրան Սըրմաքէշեան (Ալֆորվիլ) հինգ հազար, Պ. Թովմաս Պօյաճեան, Պաղտասարեան (Իսի), երկու հազարական, Պ. Թորոսեան հինգ հարիւր ֆրանք :

Վարժարանի Ծնողներու Միութենէն ասփիրաթէօռ մը : Պ. Գէորգ Մարանկօզեան իր մօրը յիշատակին երկու պարտէզի նստարան : Տիկին Պալըրճեան սեղանի ծածկոց մը :

---

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Վասպուրականի Հայր. Միութիւնը Օննիկ Միսկիրճեանի մահուան առթիւ յանուն շրջանի Վասպուրականցիներուն իր վշտակցութիւնները կը յայտնէ Այրի Տիկին Միսկիրճեանի եւ ընտանեկան պարագաներուն եւ փոխան ծաղկեպսակի երկու հազար ֆրանք կը նուիրէ Պոմոնի Համազգայինի դպրոցին :

---

### ՆՈՒԷՐՆԵՐ

Մեսրոպ Շիրինեանի մահուան առթիւ Սեբաստիոյ Նահանգային Մուրատ Ուսումնասիրաց Միութիւնը, փոխան ծաղկեպսակի ստացած է հետեւեալ նուէրները.— Ե. Մինասեան՝ 500, . Գաշիքէմանեան հինգ հարիւր, Ա. Դարբինեան՝ երկու հարիւր, Ց. Շիրվանեան՝ հինգ հարիւր եւ Ղ. Դանիէլեան՝ 300 ֆրանք :

---

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին տարեկան պարահանդէսը 28 Դեկտեմբերին, կիրակի Լիւթէսիայի մեծ սրահին մէջ, սրահին նուագախումբով :

---

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

× Կիրովականէն Տիկին Արփենիկ Մարգարիի Դուլուխանեան կը փնտռէ իր զաւակը Համազասպ Վարդանի Դուլուխանեանը, ծնած 1921ին, Թիֆլիս, երկար տարիներէ ի վեր ոչ մէկ լուր ունի :

× Կիրովականէն Նուարդ Քոչինեան կը փնտռէ իր եղբայրը Սարիբէգ Բարսեղի Քոչինեան, ծնած է 1916ին, երկար տարիներէ ի վեր լուր չունի :

Կը խնդրուի արտասահմանի բոլոր հայ թերթերէն որ արտատպեն այս փնտռտուքներու ցանկերը, որոնք հետզհետէ պիտի հրատարակուին :

Տեղեկացնել 15 Րիւ ժան Կուժօն :

Փարիզի Հայոց եկեղեցին :

Imprimé sur les presses du journal HARATCH
17. Rue Bleue; 17 — PARIS (9e)

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի, Քառէի սրահը :

Պիտի խօսի դրամատան տնօրէն՝ Պ. ՆՇԱՆ ՀԱՅԹԱՅԵԱՆ : Նիւթ ունենալով «Դրամատան եւ սակարանի դերը դարերէ ի վեր» : Մուտքը ազատ է :

---

### ՖՐԱՆՔԵԻՒՏԱԼԱԿԱՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ

Հովանաւորութեան տակ, Ֆրանսայի մէջ առաջին ներկայացումները տեղի կ'ունենան՝

ՎԻՎԱԼՏԻԻ
« ԼԱ ՖԻՏԱ ՆԻՆՖԱ »
Օփերա
Բեմադրութիւն եւ ղեկավարութիւն՝
ԱՆՃԵԼՕ ԷՖՐԻԿԵԱՆ
Թէաթր տէ Շան զ'Էլիզէ,
15, Ավընիւ Մօնթէյնը

Շաբաթ, Կիրակի եւ Երկուշաբթի ժամը 21ին :

Տոմսերու գին՝ 300էն 1800 Ֆրանք :

---

### ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԻՈՒԹԻՒՆ

Այն ծնողները որ կը փափաքին իրենց զաւակները օդափոխութեան կայան ղրկել, կրնան դիմել.— Եկեղեցւոյ դիւանատունը ամէն երեքշաբթի ժամը 15էն17 :

---

### ՅԻՇԱՏԱԿԻ ԵՐԵԿՈՅ

Հանրածանօթ նկարիչ Սարգիս Խաչատուրեանի մահուան տասնամեակին առթիւ, Սանասարեանի իր ընկերները կազմակերպած են երեկոյթ – թէյասեղան մը, որ տեղի պիտի ունենայ 13 Յունիս, Ուրբաթ, ժամը 21ին, Օթէլ Լիւթէսիայի մէջ, 43, Պուլվ. Ռասփայ, մէթրօ Սէվր – Պապիլոն :

Հովանաւորութեամբ Կաթ. պատուիրակ Ս. ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ :

Կը նախագահէ Պ. ՖՐԵՏԷՐԻՔ ՖԷՅՏԻ

Արուեստագէտին կեանքը եւ արուեստը պիտի ներկայացնեն՝ Պ. Պ. Մկրտիչ Պարսամեան, Ֆր. Ֆէյտի, Բիւզանդ Թօփալեան, Շարլ Ջահար ու Դեւ :

Գեղարուեստական բաժնին իրենց սիրայօժար մասնակցութիւնը պիտի բերեն Օր. Լիտիա Կարին, Ա. Գմբէթեան եւ Պ. Սերժ Բաջեան :

Ծախքերու մասնակցութիւն՝ 300 Ֆր. :

---



## ՍԱՄՈՒԷԼ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Վարժարանին 1958 – 1959 ուսումնական տարեշրջանի արձանագրութիւնները կը բացուին ապրիլ15ին եւ կը փակուին Յուն. 15ին : Տեսչութիւնը ջերմօրէն կը խնդրէ որ դիմողները անպայման միասին բերեն իրենց զաւակներուն դպրոցական ՎԻՃԱԿԱՑՈՅՑԸ :

COLLÈGE S. MOORAT
26, Rue Troyon, Sèvres Tel. OBS. 18-28

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՎԻԷՆ.— Հ. Մ. Ը. Մ.ի ընդհ. ժողովը այս Երկուշաբթի, ժամը 20.30ին, Համօ Օհանջանեան ակումբը : Կը խնդրուի բոլոր անդամներէն ներկայ գտնուիլ, ինչպէս նաեւ մարզիկ եղբայրներէն :

---

Ծանօթ Աւետարանիչ Վեր. Ս. ՏՈԳԹՈՐԵԱՆ պիտի խօսի Յունիս 8էն սկսեալ ամէն իրիկուն ժամը 8.30ին, 28 Ավընիւ Պուրկէն, Իսի լէ Մուլինօ, մեթրօ Մէրի տ'Իսի : Մուտքը ազատ է :

## ՆՈՒԷՐՆԵՐ

ԹՈՒԼՈՆԷՆ Պ. Երուանդ Ադամեան հազար ֆրանք կը նուիրէ Անտիլիի Հանգստեան տան, իր եղբօր աղջկան Ֆիմիի արկածալի մահուան առթիւ. Պ. Մարգար Ադամեան հազար ֆր. Միկայէլի Տան նոյն առթիւ:

Ստանալ «Յառաջ»էն:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ, յաւարտ Ս. Պատարագի, տեղի պիտի ունենայ հոգեհանգիստ, ի յիշատակ Միութեանս բարերար

ՌԱՖԱՅԷԼ ՄԱՐԿՈՍԵԱՆԻ

Մարկոսեանի նախկին եւ ներկայ բոլոր սաները, Միութեան անդամները եւ բարեկամները կը հրաւիրուին իրենց ներկայութեամբ յարգել հանգուցեալին յիշատակը: Դիւան

Հ. Բ. Ը. Միութեան Եւրոպայի Կեդր. Յանձնաժողովի

×

Համա – Զարսանճագի Հայր. Միութեան Լիոնի մասնաճիւղը համայն Զարսանճագի նահատակներուն յիշատակին, կը ծանուցանէ թէ հոգեհանգիստ պիտի կատարուի այս կիրակի, Լիոնի Հայոց եկեղեցին, այս առթիւ կը հրաւիրուին մեր նահատակներու յիշատակը յարգող հայրենակիցները եւ բարեկամները:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սէն Ժերոմի Ս. Սահակ Մեսրոպ եկեղեցւոյ Թաղ. Խորհուրդը, ողբացեալ Բժիշկ Յակոբ Սիվրիհիսարլեանի մահուան քառասունքի առթիւ, խորին շնորհակալութեամբ ստացած է Այրի Տիկին Շնորհիկ Շահլամեանէ հազար ֆր., ի նպաստ թաղին եկեղեցւոյ պայծառութեան:

×

Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ գումարները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան: Պ. Նշան Նիկողոսեան իր հօրը հանգուցեալ Յովհաննէս Նիկողոսեանի մահուան քառասունքին առթիւ տասը հազար ֆրանք: Նոյն առթիւ Տէր եւ Տիկին Մութաֆեանէ երկու հազար ֆր.:

Օր. Մարի Մաթոսեանի եւ Պ. Վարուժան Պօյաճեանի նշանախօսութեան առթիւ հաւաքուած է Պ. Պ. Կարապետ Մաթէօսեանէ երկու հազար, Կարապետ Մակսեանէ հինգ հազար, Նիկողոս Գրքողեան հինգ հազար, Պաղտասար Հալաճեան հազար, Յարութիւն Զատիկեան երկու հազար, Լութֆիկ Զատիկեան 1500, Ներսէս Պօյաճեան հինգ հազար, Սարգիս Փողարեան իր պսակին առթիւ 7000 ֆրանք:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Բ. Ը. Միութեան տարեկան պարահանդէսը տեղի պիտի ունենայ 1959 Փետրուար 22ին Ժորժ Ե.ի սրահներուն մէջ: Բոլոր կազմակերպութիւններէն կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

Imprimé sur les presses du journal HARATCH
17. Rue Bleue. 17 — PARIS (9e)

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐ

### եւ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Այս Կիրակի կէսօրէն ետք ժամը 15.30–ին Կղերականներու սրահը, Րիւ տէ Պահիւթիէ: Կը նախագահէ Տիկին ԵՂՍԱԲԷԹ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ:

Յայտագիր.— Խմբերգ, արտասանութիւն, մենախօսութիւն, «Երեք դպրոցականներ», «Պուպրիկներու խաղը», «Աստուն կանուխ ելիր»:

Մուտքը ազատ է:

## ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԻՈՒԹԻՒՆ

Այն ծնողները որ կը փափաքին իրենց զաւակները օդափոխութեան կայան ղրկել, կրնան դիմել.— Եկեղեցւոյ դիւանատունը ամէն երեքշաբթի ժամը 15էն17:

## ՅԻՇԱՏԱԿԻ ԵՐԵԿՈՅ

Հանրածանօթ նկարիչ Սարգիս Խաչատուրեանի մահուան տասնամեակին առթիւ, Սանասարեանի իր ընկերները կազմակերպած են երեկոյթ – թէյասեղան մը, որ տեղի պիտի ունենայ 13 Յունիս, Ուրբաթ, ժամը 21ին, Օթէլ Լիւթէսիայի մէջ, 43, Պուլվ. Ռասփայ, մէթրօ Սէվր – Պապիլոն:

Հովանաւորութեամբ Կաթ. պատուիրակ Ս. ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆի:

Կը նախագահէ Պ. ՖՐԵՏԷՐԻՔ ՖԷՅՏԻ

Արուեստագէտին կեանքը եւ արուեստը պիտի ներկայացնեն՝ Պ. Պ. Մկրտիչ Պարսամեան, Ֆր. Ֆէյտի, Բիւզանդ Թօփալեան, Շարլ Զահար ու Դեւ:

Գեղարուեստական բաժնին իրենց սիրայօժար մասնակցութիւնը պիտի բերեն Օր. Լիտիա Կարին, Ա. Գմբէթեան եւ Պ. Սերժ Քաջեան:

Ծախքերու մասնակցութիւն՝ 300 Ֆր.:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկին Մազլըմեան «Վիլլըմօմպլէն» կը նուիրեն երկու հազար ֆրանք Հ. Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օղաճ. կայանին, փոխան ծաղկեպսակի, ողբ. Տիկին Ժպտուն Ոսկերիչեանի մահուան առթիւ: Պ. Թորգոմ Կոտակեան կը նուիրէ հազար ֆրանք Հ. Կարմիր Խաչի Անտէր հիւանդներու ֆոնտին իր անդրանիկ թոռնիկին մկրտութեան առթիւ:

Հայ Կարմիր Խաչի Օրուան Մայիս 11ի գեղարուեստական ցերեկոյթին առիթով Ֆեսանվիլիէի օղաճ. կայանին կը նուիրեն.— Պ. Պ. Հիւսիսեան քսան հազար ֆր., Նուպար քսան հազար, Տէր եւ Տիկ. Տաքէսեան հազար ֆր., Պ. Պ. Քերովբէ Կիւմիւշեան, Ա. Աճէմեան, Գըլըճեան հազարական ֆրանք:

## ԳՈՐԾ ԿԸ ՓՆՏՌԷ

Հայ ընտանիքի մը մէջ, խոհանոցով կամ ծերունիի մը խնամքովը զբաղելու համար գործ կը կ'ուզէ ունենալ հայ կին մը: Դիմել Մատամ Ս. Յակոբեան, Շէ Օր. Էլմոն, 54 րիւ Լաֆայէթ, Փարիզ(9):



## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Շատ վարպետ քիւլօթիէներ: Ներկայանալ նմուշով (մօտէլ).—

DAVID
63 bis, Rue Réaumur, Paris

## "ԴՐՕՇԱԿ"Ի ԱՌԱՋԻՆ ՏԱՍՆԱՄԵԱԿԻ ՀԱՒԱՔԱԾՈՆ

Հայաստանի յեղափոխական շարժման պատմութիւնը իր բոլոր մանրամասնութիւններով արձանագրուած է «Դրօշակ» ամսագրին մէջ, որուն առաջին տասնամեակի թիւերէն մնացած էր մէկ հաւաքածոյ եւ խնամքով կը պահուէր Հ. Յ. Դ. Փարիզի Թանգարանին մէջ:

Անգտանելի այս հաւաքածոն լուսապատկերներով հրատարակուեցաւ, որպէսզի ամէն Հայ պատեհութիւն ունենայ լրիւ տեղեկանալու իր ազատատենչ հայրենիքի անվերջ մաքառումներուն եւ հրաշալի յարութեան:

«Դրօշակ»ի առաջին տասնամեակի (1890 – 1901) հաւաքածոն կը հրատարակուի երկու հատորով:

Առաջին հատորը (1890–1897) նոր լոյս տեսաւ, 750 մեծադիր էջ: Թղթակազմի գինն է 1800 ֆրանք, շքեղ կազմուած՝ 2400 ֆրանք:

Գրատուն Պարսամեան, 46, րիւ Րիշէ, Փարիզ (9):

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

Վիճակահանութեան շահող թիւերէն մնացած են հետեւեալները.— 27 95 25 117 880 508 810 286 550 501 860 359 1021 1053 1103 1221 1251 1509 1443 1490 1354 1395 2344 2317 2310:

Կը խնդրուի ստանալ համապատասխան առարկաները Տիկին Գազազեանէ, 6 րիւ Սէն Սիւլփիս, Փարիզ, հեռ. ՏԱՆ. 67.36, մինչեւ Օգոստոս:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի, Քաղէի սրահը:

Պիտի խօսի դրամատան տնօրէն՝ Պ. ՆՇԱՆ ՀԱՅԹԱՅԵԱՆ: Նիւթ ունենալով «Դրամատան եւ սակարանի դերը զարգացման եւ վեր»: Մուտքը ազատ է:

## ԼԻԼԱ ՊԷԼՎԻԼ ՄԻԱՑԵԱԼ ԴՊՐՈՑՆԵՐՈՒ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

15 Յունիս Կիրակի ժամը 15 – 19 Փռէ Սէն Ժէռվէի քաղաքապետարանի սրահը, 1 րիւ էմիլ Օժիէ:

Հովանաւորութեամբ Հայրապետական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆի:

Արտասանութիւն, երգ, պար եւ ներկայացում աշակերտներու կողմէ:

Մուտքը ազատ է:

Մէթրօ Փորթ տէ Լիլա, ուրկէ 170 թիւ հանրակառքը կը բերէ ճիշդ սրահին քով:

## ՍԱՄՈՒԷԼ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Վարժարանին 1958 – 1959 ուսումնական տարեշրջանի արձանագրութիւնները կը բացուին Ապրիլ 15ին եւ կը փակուին Յուն. 15ին: Տեսչութիւնը ջերմօրէն կը խնդրէ որ դիմողները անպայման միասին բերեն իրենց զաւակներուն դպրոցական ՎԻՃԱԿԱՑՈՅՑԸ:

COLLÈGE S. MOORAT
26, Rue Troyon, Sèvres Tel. OBS. 18-28

ԽՐՈՒՇՉԵՒ կարգ մը լրագրողներէ հարցապնդուելով յայտարարեց .— Մա — լենկով ողջ է, Բուլգանին հիւանդանոց կը գտնուի, իսկ Մոլոթով արձակուրդի մէջ է :

ՖՐԱՆՍԱՅԻ Պատերազմական նախարար Կիյեոմա պաշտօնապէս Փարիզ հրաւիրեց Արեւմտեան Գերմանիոյ իր պաշտօնակիցը՝ Շթրաուս, որուն այցելութեան թը — ւականը տակաւին չէ ճշդուած. հիւլէա — կան մարզին մէջ ֆրանքօ-գերման գոր — ծակցութեան ակի՞զբն է արդեօք, հարց կուտայ տեղական մամուլը :

ԹՈՒՐՔԻՈՅ բոլոր թերթերը կը գրեն թէ Կիպրոսի մէջ Անգլիացիները արտասովոր ռումբեր նետած են Յոյներու վրայ. միւս կողմէ Թուրք կամաւորներու բանակ մը կազմուած է, ի հարկին Կիպրոս երթալու համար :

---

Տէր եւ Տիկին Շաւարշ Փիրանեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Սուրէն Փիրանեան եւ զաւակները, Պ. Գուրգէն Փիրանեան, Օր. Մարի Փիրանեան, Տէր եւ Տիկին Կիրակոս Անխթիկեան, Տէր եւ Տիկին Վարդան Փիրանեան ցաւով կը ծանուցանեն իրենց հօր, մեծ հօր եւ ազգականին՝

ՏԻԳՐԱՆ ՓԻՐԱՆԵԱՆԻ

մահը որ պատահեցաւ չարաթ, Յունիս 14ին, Մարսէյլ:

Յուղարկաւորութիւնը այս Երկուշաբթի առաւօտ ժամը 9ին Փրատոյի Մայր — եկեղեցիին մէջ :

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել :

---

ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կրընոպլի Հ. Մ. Ը. Մ.ը կազմակեր — պած է տարեկան մեծ դաշտահանդէս մը, Յունիս 22ին, Կիրակի ամբողջ օրը, Սէ-սէնի հանրածանօթ գիւղին գեղեցիկ փառքին մէջ (անցեալ տարուան վայրը):

Գեղարուեստական լաւագոյն բաժին մը մասնակցութեամբ Նոր Սերունդին :

Տղաքը կը ներկայացնեն զաւեշտ մը՝ ԽԵՋՈՅԻ ԹՈՒՂԸ: Բարձրախօս հայ եւ ֆրանսական երգապնակներով :

Ձոխ պիւֆէ այլազան խմիչքներով: Այս հանդէսը զուգադիպելով Հ. Մ. Ը. Մ.ի քառասնամեակին կը հրաւիրուի մօտա — կայ գաղութներուն համակիր հայ երի — տասարդութիւնը :

Քաղաքին օթօքառերը կը մեկնինՇմէն տը Լալփէն 8·30ին, գարոյին առջեւ 8·45, Փլաս Վերտէօն 9, Փաճսին առջեւ 9·15:

Անձրեւի պարագային կը յետաձգուի յաջորդ կիրակի :

---

ԴՊՐՈՑԱՍԷՐ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի ա — մավերջի հանդէսը տեղի պիտի ունենայ Յունիս 29ին, Կիրակի կէսօրէ ետք ժամը երեքին վարժարանին մէջ: Հանդէսէն յե — տոյ տեղի պիտի ունենայ տարեկան դաշ — տահանդէսը օժանդակութեամբ Ծնողա — կան Միութեան :

Երգ, պար, արտասանութիւն եւ հաճե — լի անակնկալներ :

Մուտքի գին 250 ֆրանք :

Հաղորդակց. միջոց.— Էկլիզ տը Բան — թէնէն առնել 146 թիւ օթօպիւսը եւ իջնել Րէնսի — Փավիյոն :

---

ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

«Ժէօնէս է Աքսիոն» Ընկերութիւնը կը կազմակերպէ ամառնային բանակումներ ութէն քսան տարեկան մանուկներու եւ ե — րիտասարդներու (երկսեռ) համար իր նոր գնած գեղեցիկ բանակավայրին մէջ, Իզեռ, 880 մեթր բարձրութիւն: Հայկա — կան եւ հոգեւոր մաքուր մթնոլորտ: Ա — ռաջին շրջան, Յուլիս 15էն Օգոստոս 11, երկրորդ շրջան՝ Օգոստոս 13էն 27: 14 տարեկանէն վեր եղողները կրնան երկու բանակումներուն ալ մասնակցիլ :Ման — րամասնութեանց համար դիմել՝

Օր. Սիւզան Տէր–Անդրէասեան,
30, Ռիւ Շաթօ Փայան, Մարսէյլ
(Պուշ տիւ Ռոն)
Հեռաձայն 48·51·88

Նոյն գեղեցիկ վայրին մէջ կահաւոր — ուած սենեակներ վարձու կը տրուին Յու — նիս եւ Սեպտեմբեր ամիսներուն համար : Դիմել՝ վերի հասցէին :

Imprimé sur les presses du journal HARATCH
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——

Գ. ՑԱՆԿ — ՄԱՐՍԷՅԼ

«Շանթ» Գրական գեղարուեստական ընկերակցութիւնս ուրախութեամբ եւ շը — նորհակալութեամբ կը յայտարարէ որ իր նորահաստատ գրադարան – ընթեր — ցարանին ձոխացման համար եղած են հե — տեւեալ նուիրատուութիւնները :

1·— «Յառաջ»ի խմբագրութիւն՝ քա — ռասուն հատոր գիրք եւ չորս մը ամսա — թերթ :

2·— Կարօ Գէորգեան՝ տասը հատոր, երեք հատորը (Պէյրութէն) իր «Ամէնուն Տարեգիրքը», հեղինակութիւնէն, Բ. Գ. Դ. թիւերը:

3·— Հրանդ Բալուեան՝ իր «Ջուարթ — նոց» տարեգիրքին հետ ուրիշ հինգ հա — տոր գիրք:

4·— Մարտիրոս Թաշճեան՝ հինգ հա — տոր գիրք եւ «Հայրենիք» ամսագիր 12 հատոր:

5·— Շամլեան՝ Փարիզէն «Յառաջ»ի հինգ տարուան հաւաքածոն :

Հաճոյքով եւ շնորհակալութեամբ կ'ար — ձանագրենք եղած այս նուիրատուութիւն — ները: Վստահ ենք որ շուտով նոր նուի — րատուութիւններով, գրասէր մեր բարե — կամները եւ ընկերները պիտի ուզեն ի — րենց մասնակցութիւնը բերել «Շանթ» գրական գեղարուեստական ընկերակցու — թեանս ազգօգուտ մշակութային այս ձեռ — նարկին :

«Շանթ» ընկերակցութեան վարչութիւն

---

ՍԱՄՈՒԷԼ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Վարժարանին 1958 – 1959 ուսումնական տարեշրջանի արձանագրութիւնները բաց — ուած են :

Տեսչութիւնը ջերմօրէն կը խնդրէ որ դիմողները անպայման միասին բե — րեն իրենց զաւակներուն դպրոցական ՎԻՃԱԿԱՑՈՅՑԸ :

COLLÈGE S. MOORAT
26, Rue Troyon, Sèvres Tel. OBS. 18-28

---





---

ԾԱՆՕԹ ԱՒԵՏԱՐԱՆԻՉ



Վեր. Ս. ՏՕԳԲՕՐԵԱՆ
կը խօսի
Ամէն իրիկուն ժամը 8·30ին
28: Ավընիւ Պուրկէն, Իսի լէ Մուլինօ,
Մուտքը ազատ է :

ՍԱՄՈՒԷԼ - ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Մրցանակաբաշխութեան հանդէսը տեղի պիտի ունենայ Յունիս 28ին, Շաբաթ օր, կէսօրէ վերջ ժամը 17ին, Սեւրի քաղա — քապետին նախագահութեամբ :

Սիրով հրաւիրուած են յարգելի ծնող — ներ եւ բարեկամներ :

---

ՈՒԽՏԱՒՈՐՆԵՐԸ ՕՐԸ

22 Յունիս, Կիրակի ժամը երեքին, Մուրատեան վարժարանի մէջ, գեղար — ուեստական բաժին, ուխտադնացութեան ժապաւէնը : Պիւֆէ :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Խանասորի հերոսամարտի տարեդարձը, Շաւիլի մէջ Յուլիս 27ին:

---

ԴՊՐՈՑԱԿԱՆ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ
ԼԻՈՆԻ «ՀԱՅԿԱԶԵԱՆ» ՎԱՐԺԱՐԱՆԻ

22 Յունիս, Կիրակի կէսօրէ վերջ ժամը երեքին, Լիոնի Ջ. Թաղապետարանի սը — րահին մէջ (Րիւ տը Սէիզ):

Պիտի ըլլան դպրոցական եւ մանկական զուարճալի խաղեր եւ ուրիշ նոր եւ ապա — ւորիչ անակնկալներ :

Սիրով կը հրաւիրուի լիոնահայ գա — ղութը այս դպրոցական հանդէսին :

Մուտքը ազատ է :

# “ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ” ԵՐԳԻՉՆԵՐԸ...

Քառասուն երկար տարիներու ընթացքին Խորհրդ. Ռուսիոյ քաղաքական վարիչներու գրաւոր եւ բանաւոր խօսքը երբեք չհամապատասխանեց իրենց կատարած գործին :

Մոսկուայի Համայնավար վարիչները իրենց յաճախակի առաջարկներով ու իրենց աշխատանքներով եկան հաստատելու բոլոր ճակատներու վրայ, թէ անոնք ներելի եւ աններելի ճանապարհներով, միայն մի նպատակ կը հետապնդեն՝ աշխատիլ ամէն կերպ իրենց համաշխարհային Համայնավարութեան տիրապետութեան ծրագիրը շուտ կամ թէ ուշ իրականացնել :

1956 Փետրուարին Համայնավար կուսակցութեան 20րդ Համագումարին մէջ Խրուշչեւ իր երկարապատում ճառերուն մէջ կը դատապարտէր երբեմնի Ռուսիոյ մեծ բռնապետ Սթալինը, անոր վերագրելով տասնեակ հազարաւոր անմեղ համայնավար յայտնի գործիչներու սպանութիւնները : Ռուսիոյ ներկայ մենատէրը, կը յիշեցնէր միայն ռուս համայնավար զոհերը, կը մոռնար ուրիշ ազգութեան եւ ուրիշ կուսակցութեան պատկանող զոհերը, մէջը լինելով եւ Հայաստանի հազարաւոր Դաշնակցական եւ ոչ Դաշնակցական մտաւորականները, քաղաքացիները, զինուորականները, գիւղացիները, բանուորները, որոնք կացինահար եղան Հայաստանի բանտերուն մէջ եւ որոնց մեծ թիւը անյայտացան ցրտաշունչ Սիպերիոյ սառնամանիքներուն մէջ:

Համայնավար կուսակցութեան առաջին քարտուղար եւ Խորհրդային Ռուսիոյ միահեծան տէրը՝ Խրուշչեւ կը շարունակէ գլուշութեամբ նոյն քաղաքականութիւնը, ինչպէս իր վարպետը Սթալին : Տարբերութիւնը այն է միայն, որ Ն. Խրուշչեւի դէմքին վրայ միշտ ժպիտ կայ եւ իր գործը յառաջ կը քշէ, կատակներով ու քաղցր զրոյցներով եւ լաւ յոյսերով, մինչդեռ Սթալինի դէմքին վրայ ոչ ժպիտ կար եւ ոչ ալ ընդունակ էր կատակներ ընելու: Եւ այդ է պատճառը, որ Խրուշչեւ ժպիտը դէմքին կարողացաւ տէր դառնալ երկու կարեւորագոյն պաշտօններու, առաջին քարտուղար համայնավար կուսակցութեան եւ վարչապետ՝ Խորհրդ. Ռուսիոյ: Մէկ խօսքով միահեծան տէրը ռուսական շարաշուք բոլշեւիզմին եւ տէրը համայնավար աշխարհին : Իր գլխաւոր նպատակը, կանգ չառնելով որեւէ դժուարութեան առջեւ, պիտի աշխատի տարածել համայնավարութեան ազդեցութիւնը ազատ աշխարհի մէջ, իրեն հետ ունենալով արտասահմանի ոչ ռուս համայնավարները եւ համայնավարութեան գաղափարով տարուած բարեկամները :

Զանազան անուններու ու մութ նպատակներու տակ, քառասուն տարուան փորձառութիւնը նկատի ունենալով, իրենց բուն նպատակն է յանուն համայնավարութեան տիրապետել աշխարհի եւ տարածել իրենց ազդեցութիւնը թէ քաղաքականապէս եւ թէ տնտեսապէս :

« Հաւաքական ղեկավարութեան » մասին խօսքը, որ գոյութիւն ունէր մասնաւորապէս Սթալինի մահուան օրերուն, աչքակապութիւն է, ինչպէս երէկ, այսօր ալ կը շարունակէ Խորհրդային Ռուսիոյ մէջ նոյն մենատիրութիւնը :

Եւ այսպիսով համայնավար կուսակցութեան եւ թէ Խորհրդային Ռուսիոյ կառավարութեան ճակատագիրը կը վարէ Ուքրայնիոյ երբեմնի «Մսագործը» Խրուշչեւ, որուն այդ անունը կուտար ժամանակին Ուքրայնիոյ ժողովուրդը, նշանաւոր Եժովի հետ, իր կատարած ահաւոր մաքրագործումներուն համար, երբ Ուքրայնիոյ համայնավար կուսակցութեան առաջին քարտուղարն էր, ուղարկուած Մոսկուայէն, իր բարեկամ Սթալինի կողմէ :

Այսօր ալ Մոսկուայի վարիչները Խրուշչեւի գլխաւորութեամբ, «խաղաղութեան » երգչի դերին մէջ, իրենց խօսքը միշտ տարբեր իրենց գործին հետ, բոլոր տեսակի միջոցներով, իրենց բուն նպատակն է պղտորել ջուրերը, ձուկ որսալու համար :

Լիբանանի ներքին կռիւներու ու տագնապի առիթով իբր «արտյաւ» բարեկամ Մոսկուայի պաշտօնական համայնավար թերթերը կը գրեն . «Իմփերիալիստները կը ջանան պատերազմ բռնկցնել արաբական արեւելքի մէջ: Սովետները չեն կրնար ձեռնածալ նստիլ, երբ Իմփերիալիստները կը ջանան հրդեհ մը վառել Խորհրդային Միութեան անմիջական սահմաններուն մօտ: Ժամանակը եկած է, որ յիմարօրէն կրակին հետ խաղացողները ըմբռնեն այս ճշմարտութիւնը »:

Երբ այս վերի տողերը կը գրեն Մոսկուայի պաշտօնական թերթերուն մէջ, անդին, Պէյրութի արաբական մամուլը ցաւով կը գրէ թէ «Լիբանանի արտաքին նախարար Շարլ Մալիքի յայտարարութեան համաձայն, Լիբանանի մէջ գրաւուած են ոստիկանութեան կողմէ խորհրդային զէնքեր եւ ձերբակալուած են մի շարք Ռուսեր, սուրիական անցագրով »: Հասկացողին շատ բարեւ :

Լիբանանի իշխանութեան կողմէ արդէն փաստուած է օտարներու միջամտութիւնը Լիբանանի ներքին ցաւոտ դէպքերու ու կռիւներու ընթացքին: Եւ արաբական մամուլը օր օրին կը գրէ . «Լիբանանի եղբայրասպան ներքին կռիւները կը ղեկավարեն Դամասկոս հաստատուած միջազգային համայնավարութեան գործակալները »:

Եւ ինչ խօսք որ այդ գործակալները անոնք են, որոնք ամիսներ առաջ եկած են Սուրիա, Մոսկուայի կողմէ ուղարկուած իբրեւ «մասնագէտներ եւ փորձագէտներ» զանազան առեւտրական գործերու համար, «տնտեսական » ճակատի վրայ աշխատելու:

Այսպիսի «մասնագէտներ»ով ու այսպիսի «փորձագէտներ»ով գրաւեցին ժամանակին պալթեան երկիրները, Ռումանիան, Պուլկարիան, Չեխոսլովաքիան, Հունգարիան եւ այլ երկիրները :

Այդ «մասնագէտներ»ը կը ուղարկուին աշխարհի ամէն կողմէ, եղբայրական օգնութեան եւ յանուն խաղաղութեան :

Այդ «մասնագէտներ»ու եւ «փորձագէտներ»ու միջոցաւ կը թունաւորեն օտար երկիրները, կ'առաջնորդեն օտար երկիրներու ամբոխները, միշտ իբրեւ խաղաղութեան եւ ազատութեան երգիչներ, սակայն միշտ առատ դրամներով...

Մոսկուան չափէն աւելի կը հետաքրքրուի այսօր արաբական աշխարհով եւ արդէն կարողացեր է կամուրջ ձգել Եգիպտոսի եւ Սուրիոյ վրայով դէպի Միջին Արեւելք:

Մոսկուայի պաշտօնական «Իզվեստիա» թերթը կը գրէ. « Լիբանանի մէջ տեղի կ'ունենայ զանգուածային ժողովրդական շարժում եւ զինեալ ապստամբութիւն, տեղական իշխանութիւնները չեն կրնար զսպել այս մեծ շարժումը, որքան ալ կոչ կ'ուղղեն իրենց տեղական կանոնաւոր բանակին: Լիբանանի ժողովուրդը պարզ ու որոշ կ'ուզէ իր երկրի արտաքին քաղաքականութեան փոփոխութիւնը :

Ահա այս է գլխաւոր անհանգստութիւնը եւ փորի ցաւը Մոսկուայի քաղաքական վարիչներուն: Յատկապէս կը շեշտեն արտաքին քաղաքականութիւնը եւ արտաքին քաղաքականութեան փոփոխութիւնը, որովհետեւ Լիբանանի խորհրդարանը, իր արժանաւոր հանրապետութեան նախագահը եւ ժողովուրդի ճնշող մեծամասնութիւնը, Արեւմուտքի եւ ազատ աշխարհի հետ են :

Եւ այսպէսով Արեւելքի եւ Արեւմուտքի մէջ տեղի ունեցող քաղաքական մութ խաղերը եւ տարակարծութիւնները, Մոսկուայի ճարպիկ քաղաքական վարիչները, կարողացան տեղափոխել Միջին Արեւելք, մասնաւորապէս ազատ Լիբանանը, քաղաքացիական ներքին կռիւներու թատեբարեմ դարձնելով եւ եղբայրը եղբօր դէմ հանելով ու արիւն թափելով: Ռուսական բոլշեւիզմի մեքենան միշտ կը գործէ: Ռուսական բոլշեւիզմը, որուն ղեկավարները իրենց մութ քաղաքական հաշիւներուն ու նպատակներուն համար, Բրեստ-Լիտովսքի, Մոսկուայի եւ Կարսի դաշնագրերով ջարդարար Թուրքին ծախեցին հայկական պատմական հողերը:

Ոչ հայ ժողովուրդը եւ ոչ ալ պատմութիւնը պիտի ներէ ոչ ջարդարար Թուրքին եւ ոչ ալ բոլշեւիկ բռնակալ Ռուսին: Ինչպէս Լենինի եւ Սթալինի օրերուն, այսօր ալ Մոսկուայի վարիչները Խրուշչեւի գլխաւորութեամբ, ուրիշ նպատակ չեն հետապնդեր, այլ միայն բոլոր տեսակի մութ ճանապարհներով նուաճողական նոր յառաջխաղացում դէպի Միջին Արեւելք, մասնաւորապէս դէպի արաբական աշխարհ :

Եւ այդ աշխատանքին ու պայքարին մէջ մեծ դեր կը խաղան Մոսկուայի կողմէ ուղարկուած հարիւրաւոր «մասնագէտներ»ը եւ «փորձագէտները», որ իբր թէ ուղարկուած են Մոսկուայի կողմէ տնտեսական եւ այլ ճակատի վրայ աշխատելու: Երանի հաւատացելոց:

Ատլանտեան Ուխտի 15 պետութիւնները պէտք չէ, որ այսօր դիտողի դերին մէջ մնան, ինչպէս մնացին հերոսական Հունգարիոյ ծանր օրերուն: Հողեչահ լոկ որոշումները չեն, որ պիտի փրկեն ազատ աշխարհը, այլ կենդանի գործն ու աշխատանքը :

Ատլանտեան Ուխտի 15 պետութիւնները միշտ պիտի առաջնորդուին ու միշտ պիտի յիշեն Փարիզի Շայեոյի պալատին մէ տրուած իրենց որոշումը որ «դերի ժողովուրդներու ստրկութիւնը չի կրնար յաւիտեան մնալ »:

Եւ Ատլանտեան Ուխտի 15 պետութիւններուն կը մնայ կտրուկ կերպով կասեցնելու համար Մոսկուայի քաղաքական վարիչներու նուաճողական յառաջխաղացումը, յանուն արդարութեան եւ յանուն մեծ ու փոքր ճնշուած ազգերու եւ ժողովուրդներու ազատութեան :

Գ. ԲԱԼԱՅԵԱՆ

# ՄՐՄՈՒՌ ՄՏՔԵՐ...

Տան սեղաններից էն մեծ սեղանը — ինչեր ասես որ չի տեսել, չի լսել ու չի կրել էդ սեղանը, ճաշա – սեղանը :

Եթէ, նա լեզու առնէր ու պատմէր թէ՝ երբ նոր է ու գեղեցիկ, անբիծ, փայլուն, ի՛նչ խնամք է տարւում իրեն: Լաւ փայտից է նա թէ հասարակ, զարդ – զարդաբանք ունի չունի, զգոյշ են տանեցիք, որ չլինի թէ մի կաթիլ ջուր, մի յիմար բիծ փչացնի տեսքը նրա:

Օրուայ միջին քանի անգամ իր չուրջն է բերում, էդ սեղանը, ընտանիքի անդամները. գլուխ – գլխի, մեծ ու փոքր, նստում, ուտում, խմում են ամենօրեայ համեստ կերը ախորժակով, անուշ – անուշ զրոյց անում, հանգստանում :

Ու լսում է մեծ սեղանը, ամէն անգամ, կեանքն առօրեայ՝ լաւը, վատը, ընտանեկան դարդն ու ցաւը, ուրախ լուրը, տան գաղտնիքը:

Ա՜խ, եթէ էդ սեղանը կարողանար պատմել թէ՝ տարուայ մէջ քանի անգամ տօն է լինում իրենց տան, թէ էդ լոյս օրում, ինչպէս է նա երկարում, փառահեղ տեսք ընդունում, ձիւնի նման սպիտակ սփռոցը վրան առնում, նա դառնում է, ասես, մի նորահարս, փէշերը մինչեւ յատակը քաշ գցած:

Ափսոս, նա չի կարող թուել, թէ այդպէս, ինչ ինչեր է ինքը կրում, ինչ փառահեղ կերակուրներ, համով – հոտով կարկանդակներ, ըմպելիներ տեսակ – տեսակ, ռաղկեփնջեր...

Նա կը պատմէր թէ այդ ժամին իր որ կողքին, որ գլխին ով է նստում կերխում անում, վիճում, կատակում, քէֆ անում :

Մի մեծ սեղան ես գիտեմ, արդէն նոր չէ այդ սեղանը, էլ չի փայլում նա հարսի պէս, բիծ կայ նրա վրայ...

Ծանրաբեռնուած լսածներով, տեսածներով, հին յուշերով եւ ճռռում է, եւ գողում է այդ սեղանը...

Նրա վրայ, վաղուց արդէն, էլ չի փռւում մեծ սփռոցը ու նա չի կրում ոչ կարկանդակ, ոչ գինու շիշ:

Էլ չեն նստում նրա չուրջը էն հին մարդիկ, նրա գլխին — իր խսկ տէրը...

Ա՛խ, եթէ լեզու առնէր էդ սեղանը կը հարցնէր՝ ի՞նչ եղան նրանք, անվերադարձ նա ո՞ւր գնաց... Ու օրօրւում է էդ սեղանը, ու տնքում է էդ մեծ սեղանը...

ՄԱՆԻԿ ՔՈՉԱՐԵԱՆ

ՉՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԸ ՉԵՆ ՎԵՐԱԴԱՐՁՈՒԻՐ :

# Ի՞ՆՉՊԷՍ ԱԶԱՏԵՑԱՒ ՀԻՒԼԷԱԿԱՆ ՄԱՀԷՆ...

Ճարտարապետը ժամանակ չունենար հետեւելու արձակուած ռումբին. երկինքը կ'ողողուի լոյսերով, որուն կը հետեւի արտակարգ աղմուկ մը: Երկրորդ հիւլէական ռումբն է, որ կ'իյնայ Նակազաքիի վրայ :

Քուաշկի չի կրնար ըսել, թէ ցաւերը քանի ժամ տեւեցին մինչեւ այն ատեն՝ երբ ոտքի ելաւ: Իրեն համար՝ յաւիտենականութեան մէջ կը գտնուի այլեւս. պատկերը կը ճանչնայ — Կրակ, աղմուկ, մարդիկ՝ փախուստի մէջ, վիրաւորներ, այրածներ ... երեք օրուան մէջ երկու անգամ ապրիլ դժոխքը՝ շատ է մարդու մը համար. հոն կը ձգէ նաեւ տրամաբանական իր կարողութեան մէկ մասը:

Քարուքանդ քաղաքի մը մէջ, որ մատնուած է անգործութեան, ինըմոն Քուաշկի աշխատանք չի կրնար գտնել իր արհեստին մէջ : Գործարանները փճացած են, նաւաշինարանները՝ անհետացած : Ճափոնի մէջ, ոչ ոք կը մտածէ վերաշինութեան համար գումարներ յատկացնել ու վերականգնել գործարաններու պատերը :

Ճարտարապետը, ամէն ինչ կորսնցուցած, երկար ատեն կը թափառի մէկ փողոցէն միւսը, իր բազուկներն ու կռնակը կը տրամադրէ նաւատէրերուն, եւ իր պայմաններուն ներած չափով ապրանքներ կը կրէ, դանդաղօրէն, սանդխամատ առ սանդխամատ իջնելով: Կեդրոնանալու անկարող է. ի վիճակի չէ նաեւ որոշում մը տալու: Կը նախընտրէ քշուիլ կեանքի հոսանքներէն, — առանց կապուելու մարդոց կամ տեղերու :

Երկու տարի վերջ: Քուաշկի խզած է այլեւս իր վերջին կապերը՝ որոնցմով միացած էր մտաւորական դասակարգին : Կը միանայ անգործներու եւ անտուններու ամբոխի մը, որ կը ղրաղի քրջահաւաքութեամբ :

Միցուպիշի գործարանին նախկին ճարտարապետը՝ խառնուած քրջահաւաք թափառականներու մէջ... Այլեւս որոշ բնակարան չունի: Հետք անգամ չի ձգեր իր անցած ճամբաներուն վրայ: Ոստիկանութիւնը, որ խիստ հսկողութիւն մը կը կատարէ բոլոր քառուղիներուն վրայ, չի գիտեր թէ ուր կարելի է գտնել զայն : Առողջապահութեան հսկող կազմակերպութիւններն ալ չեն գիտեր իր հասցէն: Պատահականութիւնը երախտը օգնեցին՝ որ քանի մը լրագրողներ եւ քաղաքապետարանին բազմաթիւ պաշտօնեաները երկար փնտռտուքներէ յետոյ գտնեն նախկին ճարտարապետը:

Որոշ ատեն մը կը մնայ բարեկամի մը տունը. իրեն ապաստան տուող անձը յանկարծ կը տեսնէ որ ան ինքն իրեն կը խօսի՝ քնաշրջիկի մը պէս. Քուաշկի կը վերադառնայ յետոյ իր անկողինը, կը նստի եւ գիշերուան մէջ բարձր ձայնով կը սկսի խօսիլ: Կուլայ . կը դառնայ խղճալի: Ձայնը կը փոխուի յաճախ, կը դառնայ անմարդկային: Բարեկամը կը վախնայ մօտենալ իրեն եւ արթնցնել: Բայց, Քուաշկի յանկարծ ոտքի կ'ելլէ եւ կը կորսուի խաւարին մէջ :

Կը փախչի՝ աննպատակ, որեւէ տեղ : Կը փախչի հիւլէական երրորդ ռումբէն, որ իր երեւակայութեան մէջ հրէշի մը կերպարանքը ստացած է: Ամբողջ հին Ճափոնը մատնուած է այս սարսափին : Մարդոց կրօնական, աստուածներու ատեւտուրը կը փոխուի առասպելներու . առասպելները հետզհետէ կը մօտենան իրականութեան: Պատկերներն ու առասպելները կը խառնուին իրարու: Քուաշկի կը տեսնէ շարունակ սեւ հրէշը: Կրնայ նկարագրել զայն: Կը պատմէ իր ընկերներուն՝ թէ ինչպէս կը յայտնուի ան . ինչպէս տեսաւ ինք եւ ինչպէս ան օդը հանեց Նակազաքիի պաշտպան աստուածները :

(Մնացեալը յաջորդով)

# ՊԱՅՔԱՐԻՆ ԵՐԿՈՒ ԵՐԵՍՆԵՐԸ

«Ձենք ուրանար, որ մենք կը պայքարինք Բոլշեւիզմի դէմ, զայն նկատելով ո՛չ միայն մեզի համար խորթ վարդապետութիւն մը, այլեւ թշնամի՝ ազգերու ազատութեան եւ անկախութեան :

« Մեզի ծանօթ է Լենինի պատգամը․ « Մենք կը վկայենք, որ համաշխարհային ընկերվարութեան շահերը բարձր են ազգային շահերէն»: Իբրեւ լրացում այս պատգամին, Լենին կ՚աւելցնէր․ «Բանուորական հարցի բաղդատմամբ՝ ազգային հարցի ստորադաս արժէքը ենթակայ չէր ոչ մէկ կասկածի Մարքսի համար »:

« Ստալին, յիշատակելէ ետք իր ուսուցչին՝ Լենինի այս վճռական յայտարարութիւնը, իր կարգին կը գրէր․ «Հոս միայն երկու տող է, սակայն այդ երկու տողը կը վճռէ ամէն ինչ»: Ամէն ինչ վճռող այս «երկու տողին» մէջ իրարու հետ համաձայն են ռուսական համայնավարութեան երեք քուրմերը՝ Մարքս, Լենին եւ Ստալին» :

« Այս երեք քուրմերէն վերջինը՝ Ստալին՝ կը վկայէր, որ Բոլշեւիզմի նպատակն է «ի մի ձուլել ազգային կուլտուրաները սոցիալիստական մէկ ընդհանուր կուլտուրայի մէջ» :

« Մենք դէմ ենք բոլշեւիզմի ջատագոված այս երեք սկզբունքներուն․

« Ա) Համաշխարհային ընկերվարութեան շահերը գերիվեր են ազգային շահերէն :

«Բ) Ազգային հարցը ստորադաս է բանուորական հարցէն :

«Գ) Ազգային կուլտուրաները ձուլել սոցիալիստական մէկ ընդհանուր կուլտուրայի մէջ» :

« Մենք կը պաշտպանենք այս սկզբունքներուն ճիշդ հակառակ սկզբունքներ: Մեզի համար ազգային շահերը բարձր են համաշխարհային ընկերվարութեան շահերէն, ազգային հարցը իր արժէքով գերիվեր է բանուորական հարցէն, մշակոյթները պէտք է պահեն իրենց ազգային դրոշմը (այս հատուածի ընդգծումները մեզմէ Ս. Տ. Թ.) եւ ոչ թէ ձուլուին ընկերվարական ընդհանուր մշակոյթի մէջ»: («Ցուսաբեր», 15 Մայիս 1958) :

« Ցուսաբեր » շատ պարզ ձեւով ճշդած է, ոչ միայն Բոլշեւիզմի դէմ մեր մղած պայքարի բնոյթը, այլեւ մաս մը այն հիմնական սկզբունքներէն, որոնք միջուկը կը կազմեն մեր պահանջներուն :

Մեր պայքարը ուղղուած է ուրեմն, միայն եւ բացառաբար Բոլշեւիզմի վարդապետութեան, ընկերային, տնտեսական եւ ազգային քաղաքականութեան, եւ վերջապէս խորհրդային կարգուսարքին դէմ :

Մենք յաւակնութիւնն ունինք պնդելու, որ մեր ժողովուրդը, իր ջախջախիչ մեծամասնութեամբ մեզի հետ է այս պայքարին մէջ :

Մեզի հետ է, որովհետեւ, այդ ջախջախիչ մեծամասնութիւնը համայնավար չէ, եւ դէմ է համայնավարութեան :

Միայն մենք չէ, որ այս համոզումն ունինք: «Արեւ» Ռամկավար կուսակցութեան Գահիրէի օրգանը, 1948ի դեկտեմբեր չորսի թիւին մէջ կը վկայէր :

« Հայ ազգը գաղթաշխարհի մէջ առհասարակ դէմ է համայնավարութեան» :

Ոչ միայն գաղթաշխարհի, այլեւ Խ. Հայաստանի մէջ.

« Հոն (Հայաստանի մէջ) կայ ու կը մնայ ի վերջոյ, հայ ժողովուրդ մը, որ ինք ալ իր ջախջախիչ մեծամասնութեան մէջ համայնավար չէ ...» :

Հայ ժողովուրդի հակահամայնավար ջախջախիչ մեծամասնութեան մաս կազմող ռամկավար ազատական կուսակցութիւնը, կ՚ընդունի նաեւ որ «համայնավար բացարձակ տեսաբանութիւնը ո՛չ ազգութիւն կը ճանչնայ, ո՛չ ալ հայրենիք »:

Հակառակ համայնավար կուսակցութեան հանդէպ իր այս յստակ եւ վճռական դիրքաւորման, Ռամկավար կուսակցութիւնը մեզի դէմ է՝ Բոլշեւիզմի դէմ մեր մղած պայքարին մէջ: Գործնապէս ան Բոլշեւիզմի հետ է, եւ անոր գլխաւոր զինակիցը՝ գաղթաշխարհին մէջ :

Ռամկավար կուսակցութեան հակասական ընթացքը հոս չի վերջանար :

Շատերուն ծանօթ է 1948ին, գաղթաշխարհի հայութեան ուղղուած «հայրենադարձ մտաւորական»ներու նամակը : Իշխանութիւններու կողմէ թելադրուած այդ նամակին մէջ, չեշտուած էր մանաւորապէս .— «Ճշմարիտ հայրենասիրութիւնը միայն Սովետական հայրենասիրութիւնն է» :

« Պայքար » Ռամկավար կուսակցութեան օրգանը, 1948ի Օգոստոս 14ի իր թիւին մէջ գրեց շատ յատկանշական պատասխան մը: Նմոյշի համար տանք քանի մը հատուածներ միայն.—

« Այսպէս, ուրեմն, ճշմարիտ հայրենասէրներ չէին անոնք, որ «սովետ» անունը լսելէ հազարաւոր տարիներ առաջ կռուեցան մեր հաւատքին համար, մեր անկախութեան համար, ճգնեցան մեր սեփական դիրն ու մշակոյթը ստեղծել՝ դարձեալ մեր անկախ անհատականութեան համար, եւ անկէ ի վեր երբեք, երբեք չլքեցին կռիւը նոյն նպատակին համար, ամէնէն դժուար ու դժոխային պայմաններուն մէջ :

« Ոչ, սիրելի հայրենադարձ մտաւորականներ, ոչ բաղձանքը եւ ոչ ալ փորձութիւնը կայ վերլուծելու ձեր փառաբանած «սովետական» — խորհրդային բառն անդամ արտաքսելով — հայրենասիրութիւնը, իր ամբողջ դիմայեղափոխութիւններով, որ մէկ օր հայրենասէրը, միւս օր արժանի էր գնդակի: (Ընդգծումը մերն է՝ Ս. Տ. Թ.) :

Եւ վերջապէս « ... Մոռցէք, թէ «ճշմարիտ հայրենասիրութիւնը — սովետական հայրենասիրութիւնն է», եւ ընդունեցէք թէ մարդկային կեանքը չի ճանչնար ոչ միապետական հայրենասիրութիւն, ո՛չ հանրապետական, ո՛չ իսկ յեղափոխական հայրենասիրութիւն» : (Ընդգծումը մերն է. Ս. Տ. Թ.) :

Դաշնակցութիւնը տարբեր ձեւով չարտայայտուեցաւ այս մասին: Երէկ եւ այսօր, գրեթէ միեւնոյն բացատրութիւններով է, որ մենք կը պայքարինք «սովետական հայրենասէր»ներու դէմ: Տարբերութիւնը մեր եւ ռամկավարներու միջեւ այն է, որ անոնք, այսօր մոռցած են իրենց գրածները, հրաժարած իսկական հայրենասէրի կոչումէն եւ ընդունած « սովետական հայրենասիրութիւն»ը : «Պայքար»ը ամէնէն առաջ :

Ըսինք արդէն, Ռամկավար կուսակցութիւնը, հակառակ մեր յիշած այս կարգի բոլոր փաստերուն, փոխանակ մեզի հետ ըլլալու, իր տեղը գտած է մեր հակառակորդին՝ միջազգային համայնավարութեան ստեղծած եւ ղեկավարած հակադաշնակցական ճակատին մէջ :

Իր այս կեցուածքով, Ռամկավար կուսակցութիւնը, կամայ թէ ակամայ կորսնցուցած է իր ազգային նկարագիրը, եւ հրաժարած՝ ազգային կուսակցութեան պատուաւոր կոչումէն : Գործակցելով իր ամենահզօր հովանաւորին համայնավար կուսակցութեան հետ, ան կը նպաստէ մեր հայրենիքի եւ ժողովուրդի ստրկացման :

Եւ ըսե՛լ թէ Ռամկավար կուսակցութիւնը չի պայքարիր հայութեան թշնամի օտար տարրերուն դէմ ...

Ս. ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ

## ԼԻԲԱՆԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ՆԱԽԱՐԱՐ ՄԱԼԻՔԻ ԱՄԲԱՍՏԱՆԱԳԻՐԸ ԱՐԱԲ ՄԻԱՑԵԱԼ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԷՄ

ԽՄԲ.— Ինչպէս գրած էինք՝ Լիբանանի Արտաքին նախարար Շարլ Մալիք ՄԱԿի Ապահովութեան Խորհուրդին մէջ ամբաստանեց Արաբական Միացեալ Հանրապետութիւնը՝ որ կը միջամտէ Լիբանանի ներքին հարցերուն․ ստորեւ կու տանք Մալիքի ամբաստանագրին գլխաւոր մասերը :

Հիմա կ՚անցնիմ շարք մը իրողութիւններու, որոնք կը վերաբերին Լիբանանի ահաբեկչական եւ աւերիչ գործունէութեանց խումբ մը մարդոց մասնակցութեան եւ լիբանանեան ապստամբութեան մէջ անոնց ստանձնած ղեկավար դերին : Այդ անձերը ԱՄՀի կառավարութեան ենթակայ մարդիկ են :

1) 13 Մայիս 1958ին, ոմն Մոհամմէտ Ռահման Ժապարի, Հալէպէն, (Սուրիա), ձերբակալուեցաւ Պէյրութի մէջ: Խոստովանեցաւ որ սպայ է սուրիական բանակին մէջ, կը պատկանի առաջին գումարտակին (Թիւ 13748) եւ Լիբանան ղրկուած է Հալէպի երկրորդ գրասենեակի կողմէ՝ միանալու համար Պէյրութ գտնուող խումբ մը սուրիացի զինուորներու եւ հոն լծուելու ահաբեկչական գործունէութեանց : Ան խոստովանեցաւ որ իրենպէս բազմաթիւ անձեր գաղտնաբար եւ առանձինն եկած են Լիբանան եւ հոն համախմբուած են իւրաքանչիւրը տասնեւմէկ հոգինոց խումբերով: Պէյրութի մէջ կը ստանան զէնքեր եւ դրամ, դատապարտուեցաւ 15 տարի տաժանակիր աշխատանքի :

2) 16 Մայիս 1958ին, Շուֆի շրջանի պետական ոստիկանութիւնը ձերբակալեց երկու մարդիկ՝ Թիւրքի Հասան (Թիւ 7348) եւ Մահմուտ Ապտէլ Ղանի Սաապ (Թիւ 322): Առաջինը յայտնեց թէ ուսանող է սուրիական զինուորական վարժարանի մէջ, իսկ երկրորդը՝ կը պատկանի Սուրիոյ Տումա գիւղի զինեալ ուժերու 11րդ գումարտակին :

3) 15 Մայիս 1958ին, սուրիական բանակի սպայ մը ձերբակալուեցաւ Սուք էլ Ղարպի մէջ: Ան իր վրայ կը կրէր Լիբանանի քարտէսներ, ինչպէս նաեւ անուանացանկը Լիբանանի Միացեալ Նահանգներու, Միացեալ Թագաւորութեան եւ Ֆրանսայի դեսպաններուն, եւ այլ օգտակար գիտելիքներ :

4) Երկու տարիէ ի վեր, սուրիական երկրորդ գրասենեակը լիբանանեան հողամասի վրայ, լիբանանեան քաղաքականութեան հակառակ գործունէութեան լծուած է: Բազմաթիւ միջադէպեր տեղի ունեցան, ինչպէս՝ ահաբեկչութիւն, ռմբակոծում, ուժանակում, թռուցիկներու ցրւում, սպառնական անանուն նամակներու առաքում, Այս գրասենեակին գործակալները մեծ մասամբ սուրիացի եւ պաղեստինցի գաղթականներ են, թէեւ անոնց մէջ կան քանի մը Լիբանանցիներ :

Սուրիական երկրորդ գրասենեակի բազմաթիւ այլ գործակալներ ձերբակալուեցան եւ խոստովանեցան, որ լրտեսութիւն կատարած են Լիբանանի մէջ :

5) 3 Մայիս 1958ին, սուրիական բանակին պատկանող մօտ երկու հարիւր նորագիրներ անցան լիբանանեան սահմանը եւ գրաւեցին Քաֆար – Շուպա գիւղը : Ցարձակում գործեցին լիբանանեան ապահովութեան ուժերուն վրայ, որոնք փոխադարձեցին եւ զանոնք վտարեցին գիւղէն :

6) 15 Մայիս 1958ին, սուրիական բանակի բազմահարիւր նորագիրներէն բաղկացած ուրիշ խումբ մը գրաւեց Շապաա

## ԱՅՍՕՐՈՒԱՆ Խ. ՄԻՈՒԹԵՆԷՆ ՆԵՐՍ

●

Մինչդեռ Մ. Նահանգները միայն 14 միլիոն տոլար յատկացուցած են նոյն տօնավաճառին մէջ ամերիկեան չէնքին :

Բոլորովին աւելորդ է կրկնել, թէ Խ. Միութիւնը չափազանց մեծ կարեւորութիւն կ՚ընծայէ դաստիարակչութեան, եւ մասնաւորաբար գիտութեան ու գիտական պրպտումներու գործին : Մոսկուայի գործարաններէն միայն մէկուն գրադարանը կը պարունակէ աւելի քան 150.000 հատոր գիրք: 1921ին Մոսկուայի մէջ միայն ութ տարրալուծական լապորաթուառներ կային․ մինչդեռ այսօր այդ թիւը հասած է վեց հարիւրի :

Կառավարութիւնը անհաշիւ դրամ կը ծախսէ դպրոցներուն եւ գիտական կեդրոններուն համար: Մասնաւոր եւ սահմանուած պիւտճէ մը գոյութիւն չունի․ դպրոցներու եւ գիտական կեդրոններու վարիչները Մոսկուայէն կը ստանան այնքան դրամ, որքան որ պահանջեն՝ իրենց պէտքերուն գոհացում տալու համար :

Խորհրդային ժողովուրդներուն յատկանիշներէն մէկն ալ այն է որ ցեղային խտրականութիւն չեն դներ․ նոյնիսկ կարելի է ըսել, որ կը սիրեն Ասիացիներն ու Սեւամորթները․ այդ պատճառով ալ աւելի մեծ ժողովրդականութիւն կը վայելեն Չինացիներու, Միջին Արեւելքի ժողովուրդներուն կամ բոլոր ոչ – սպիտակամորթներուն մօտ: Եւրոպան չտեսած Չինացիի մը համար Մոսկուան երկրային դրախտ է․ և այս զգացումը լաւագոյնս կը շահագործուի խորհրդային ղեկավարներուն կողմէ :

Խ. Միութիւնը հսկայաքայլ յառաջդիմութիւններու եւ մեծ իրագործումներու երկիրն է․ բայց այն ինչ որ չունի եւ մենք ունինք՝ ազատութիւնն է: Արեւմտեան աշխարհին պարտականութիւնն է, ուրեմն, փաստել խորհրդային յառաջդիմութիւններէն շլացած բոլոր ժողովուրդներուն, թէ արեւմտեան սիստեմը ո՛չ միայն աւելի զօրաւոր է, այլ՝ լաւագոյնն է :

### Բ. ՌՈՒՍ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

Ճամբորդութեանս ընթացքին երկար խօսակցութիւններ ունեցայ Ռուսերու հետ, սակայն իմ խօսակիցներս երբեք առանձին չէին, պաշտօնական թարգմանէն զատ միշտ ալ ուրիշ անձ մը կամ անձեր ներկայ էին :

Միայն երկու անգամ առիթ ունեցայ Ռուսերու տուներէն ներս մտնելու․ ասոր պատճառն այն է, որ Ռուսերը ընդհանրապէս չեն սիրեր օտարականներ մտցնել իրենց յարկէն ներս․ միւս կողմէ՝ կ՚ամչնան իրենց բնակարաններուն խեղճութիւնը օտարի մը ցոյց տալու :

Ամէնէն աւելի գիտութեամբ զբաղողներուն հետ կարելի է շփման մէջ մտնել, որովհետեւ նոյնիսկ եթէ չեն խոստովանիր, շատ հետաքրքիր են գիտնալու թէ արտաքին աշխարհին մէջ ինչ կ՚անցնի կը դառնայ: Բայց միւսները, ըլլան անոնք երկրորդական պաշտօնեաներ, հասարակ մահկանացուներ, կամ քաղաքական ու պետական դէմքեր, կը խուսափին օտարներու հետ ուղղակի շփման մէջ մտնալէ:

Մոսկուան արտակարգօրէն մաքուր քաղաք մըն է: Փողոցներու մաքրութեամբ կը զբաղին ծեր կիներ: Բոլոր պանդոկներուն, դեսպանատուներուն եւ հանրային շէնքերուն առջեւ պահակներ կը կանգնին: Ոստիկանութիւնը իրաւունք ունի պահանջելու, որ անմիջապէս հաւաքէք ձեր գետին նետած ծխախոտի մոխիրն անգամ :

Քաղաքին գլխաւոր երակը Գորհովն է, նախկին Թվերսքայա պողոտան, որ կ՚առաջնորդէ դէպի Լենինկրատի պողոտան, այս վերջինը դէպի Լենինկրատ տանող միակ ճամբան է :

Քաղաքին փողոցներուն երկայնքին յաճախ կը հանդիպիք լրագրավաճառի կրպակներու կամ հեռաձայնի գործիքներու, բայց շատ հազուագիւտ կերպով՝ շուներու կամ կատուներու :

Մէթրօն շատ գեղեցիկ է, մաքուր եւ արագ, սակայն սահմանափակ է կայարաններուն թիւը․ յաճախ կէս ժամէն աւելի քալել պէտք է մէթրոյէն դուրս գալէն վերջ ձեր երթալ ուզած տեղը հասնելու համար: Առաջին ակնարկով բոլորովին աւելորդ կրնայ թուիլ մէթրոյի կայարաններուն ճոխութիւնն ու յարդարումը․ սակայն ասիկա քարոզչութեան մաս կը կազմէ․ ժողովուրդին տրուած տեսակ մը խոստում․ «բոլոր մարդերուն մէջ ահա այս ձեւի ճոխութիւն կը սպասէ ձեզի օր մը չէ մէկ օր»: Նոյնը կարելի է ըսել նաեւ նոր շինուած բոլոր պանդոկներուն համար, որոնց չափազանցեալ ճոխութիւնն ու յարդարանքը յաճախ անճաշակութեան կը հասնի :

Բնակարանի հարցը: Ըստ առողջապահական օրինագրքին, իւրաքանչիւր քաղաքացի իրաւունք ունի մօտաւորապէս 8 քառ. մեթր տարածութեան․ սակայն շատ շատերը ասոր կէսն իսկ չունին: Մոսկուա իր տարողութենէն առ նուազն 25 առ հարիւր աւելի բնակչութիւն ունի: Այնպէս որ իւրաքանչիւր սենեակի մէջ երեք, չորս, հինգ կամ նոյնիսկ աւելի անձեր կը բնակին, ընկերային ցաւալի հարցերու ծագում տալով պայմաններու մէջ :

Ճ. Կ.

(3 Շար.)

